Պրոլետարնե՛ր բոլոր յերկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ ԿՈՒԼՏ. ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ՅԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 23 (53)

ՀԿԲԿ ԾԿ-ի հրատարակչություն—«Խորհրդ. Հայաստան»
ՅԵՐԵՎԱՆ—1938

ՀԿ(Բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ ԿՈՒՍ. ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ
ՅԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 23 (53)

Հայկական ԽՍՀ ԺԿԽ Հրատարակչություն—
«ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ՅԵՐԵՎԱՆ—1938

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Եջ

1. Բարգավաճող և ծաղկող Հայաստանը . . . . . . . . . 3—25
2. Հայաստանի խորհրդային իշխանության 18-րդ տարեդարձը. *Օրինակելի պլան զեկուցողների և զրուցավարների համար* . . 26—48



Պատ. խմբագիր՝ Դ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Պատ. խմբագրի տեղակալ՝ *Հ. ՄԱՐԳԱՐՅԱՆ*
Սրբագրիչ՝ *Ա. ԲԱՐՍԵՂՅԱՆ*

Գլավլիտի լիազոր՝ Ս.—4063
Ստորագրված է տպագրության
25 նոյեմբերի 1938 թ.
Պատվեր № 800: Տիրաժ՝ 6789
*«ԽՈՐՀ. ՀԱՅԱՍՏԱՆ»-ի ՀՐԱՏ. ՏՊԱՐԱՆ,*
ՅԵՐԵՎԱՆ

# ԲԱՐԳԱՎԱՃՈՂ ՅԵՎ ԾԱՂԿՈՂ ՀԱՅԱՍՏԱՆԸ

*Հոկտեմբերյան Սոցիալիստական Հեղափոխության ծնունդ Խորհրդային Հայաստանը դաշնակների տիրապետությունից ժառանգություն ստացած հետամնաց, տնտեսապես քայքայված, սովի, աղքատության յերկրից 18 տարվա ընթացքում, Լենինի-Ստալինի կուսակցության ղեկավարությամբ դարձել է ԽՍՀՄ-ի առաջավոր հանրապետությունների մեկը: Միայն Լենինի-Ստալինի մեծ կուսակցությունն ապահովեց Հայաստանի աշխատավորության բերկրալի կյանքը: Ժողովրդի թշնամիները, ֆաշիզմի գործակալներ՝ հակահեղափոխական տրոցկիստները-բուխարինականները, դաշնակցականները և բուրժուա-նացիոնալիստները ցանկանում եյին մեր յերկրի տնտեսությունը քայքայել, վերջ տալու մեր ժողովրդի յերջանիկ կյանքին:*

18 տարվա բոլշևիկյան անողոք պայքարը ժողովրդի բոլոր թշնամիների դեմ, ապահովեց մեր աշխատավորության տնտեսական, կուլտուրական վերելքը, նպաստեց բնակչության զգալի աճմանը: Հայաստանի բնակչությունը 1914 թ. հավասար եր 1·014·000 մարդու: 1920 թ. նոյեմբերի նախօրյակին, դաշնակցության ջարդարար քաղաքականության և թալանչիական գործունեության, ազգամիջյան կռիվների, սովի և համաճարակի հետևանքով ազգաբնակչության թիվն իջել եր մինչև 720·000-ի: Միայն խորհրդային իշխանության օրոք, լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության շնորհիվ, Խորհրդային Հայաստանի ազգաբնակչության թիվը 1926 թ. հասավ 881·000-ի, իսկ առ 1/I-38 թ. 1·260·000 մարդու: Համեմատելով 1920 թ. հետ, բնակչությունն ավելացել ե 70,5 %-ով: Լավ, ունևոր կյանքի շնորհիվ աճել ե ծննդաբերությունը: Յեթե 1913 թ. ծննդաբերության աճը յուրաքանչյուր 1000-ին



հավասար եր 34,8 %, 1936 թ.՝ 42,6 %, 1937 թ. 46,8 %:

Մյուս կողմից կրճատվել ե մահացության տոկոսը: Յեթե 1913 թ. մահացության տոկոսը կազմում եր 18,6 %, ապա 1936 թ.՝ 14,5, իսկ 1937 թ. 13,1 %, սա փայլուն ապացույց ե մեր յերկրի տնտեսական, կուլտուրական անշեղ վերելքի:

Խորհրդային Հայաստանի ժողովրդական տնտեսության բարգավաճման հետ միասին աճել ե նաև բանվոր-ծառայողների քանակը: Որինակ՝ 1932 թ. միջին թվով բանվոր-ծառայողներ կային 93,996 հոգի, 1934 թ. 96·759, 1937 թ. 111·178 հոգի:

Վերջնականապես հաղթանակել ե կոլտնտեսական կարգը:

Այսպես որինակ Հայաստանում կոլեկտիվացման տոկոսը հասնում ե 91,8-ի, իսկ կոլխոզների ցանքսերի տարածությունը կազմում ե 95,5 %: Այսպիսով տնտեսապես հետամնաց, աղքատիկ տեխնիկայով, ցարիզմի և դաշնակների կրնկի տակ հյուծվող

խղճուկ Հայաստանը, խորհրդային իշխանության հաղթանակի հետևանքով, ժողովրդի թշնամիների դեմ մղվող պայքարում վերածվեց առաջավոր ինդուստրիալ և մեքենայացված գյուղատնտեսական յերկրի:

## 1) ԶԱՐԳԱՑՈՂ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ

Խորհրդային իշխանությունը ժառանգություն է ստացել դաշնակցական ավանտյուրիստներից միանգամայն քայքայված արդյունաբերություն: Ժողովրդական տնտեսության համախառն պրոդուկցիայի մեջ արդյունաբերության արտադրանքի տեսակարար կշիռը 1913 թ. կազմում էր 20,7%, իսկ այն 1919 թ. դաշնակների օրոք, նրանց քայքայիչ գործունեության հետևանքով, իջավ 10,0 %-ի:

Շնորհիվ լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության, ինչպես մյուս հանրապետություններում, նույնպես և Հայաստանում, հսկայական չափով աճել և զարգացել է մեր արդյունաբերությունը: 18 տարվա ընթացքում խորհրդային իշխանությունը կապիտալ ներդրումներ է արել ժողովրդական տնտեսության մեջ մեկ միլիարդ 441 միլիոն ռուբլի: Կառուցված են նոր գիգանտներ, ինչպիսիք են ՍԿ «սոպրեն» կոմբինատը, Կիրովականի Քիմկոմբինատը, Լենինականի Մսի կոմբինատը, Տեքստիլ կոմբինատը, Յերևանի Մեխգործարանը, Արարատի Ցեմենտի գործարանը: Վերակառուցված են Ղափանի և Ալավերդու պղնձի գործարանները, կառուցվել է Յերևանի տրամվայը և մի շարք այլ գործարաններ, վորոնք կառուցվել են խորհրդային իշխանության օրոք: Սրանք ակնառու և կենդանի փաստեր են, վորոնք ստեղծված են Խորհրդային մեծ Միության անմիջական օգնությամբ և Հայաստանի աշխատավորության ջանքերով:

Տարեց տարի աճում է մեր արդյունաբերության արտադրանքը ժողովրդական

տնտեսության համախառն պրոդուկցիայի մեջ, առ 1/I–38 թ. արդյունաբերության պրոդուկցիայի տեսակարար կշիռը հասել է 71,6 %-ի, 1938 թ. այդ տոկոսն էլ ավելի բարձր է լինելու: Արդյունաբերական և գյուղատնտեսական պրոդուկցիայի հարաբերակցությունը հետևյալ պատկերն է ներկայացնում.

| Տարիներ | Արդյունաբ. | գյուղատ. | Ընդամենը |
|---|---|---|---|
| 1913 | 21,7 | 78,3 | 100,0 |
| 1919 | 10,0 | 90,0 | 100,0 |
| 1927/28 | 22,0 | 78,0 | 100,0 |
| 1932 | 57,9 | 42,1 | 100,0 |
| 1933 | 63,4 | 36,6 | 100,0 |
| 1934 | 64,4 | 35,6 | 100,0 |
| 1935 | 65,7 | 34,3 | 100,0 |
| 1936 | 67,4 | 32,6 | 100,0 |
| 1937 | 71,6 | 28,4 | 100,0 |

Իսկ արդյունաբերության պրոդուկցիան ըստ ժողկոմատների ներկայացնում է հետևյալ պատկերը.—



(Հազար ռուբլիներով)

| Ժողկոմատ. | 1932 | 1933 | 1934 | 1935 | 1936 | 1937 | 1938 պլանը |
|---|---|---|---|---|---|---|---|
| Ծանրարդ. ժողկ. | 7054,0 | 9931,0 | 19197,0 | 24682,0 | 29906,0 | 53214,0 | — |
| Տեղարդ. ժողկ. | 5039,0 | 5764,0 | 5663,0 | 6206,0 | 7407,0 | 8754,0 | 12053,4 |
| Անտառժողկ. | 2336,0 | 3451,0 | 3072,0 | 3833,0 | 4349,0 | 3779,0 | 6653,5 |
| Թեթև Արդ. ժողկ. | 21269,0 | 27617,0 | 26294,0 | 28173,0 | 36359,0 | 39250,0 | 45035,1 |
| Ընդամե. ժողկ. | 31308,0 | 38810,0 | 45936,0 | 54165,0 | 67053,0 | 71420,0 | 94673,2 |

Այսպիսով ծողկոմատային արդյունաբերության արտադրության համախառն պրոդուկցիան 1938 թ. 9 ամսվա ընթացքում համեմատած 1937 թ. համապատասխան 9 ամիսների հետ, աճել է 10,8 %-ով:

## 2) ԵԼԵԿՏՐՈԷՆԵՐԳԻԱՆ

Ելեկտրոէներգիայի ստացումը դաշնակների որոք հավասար եր 1,7 միլիոն կիլովատ ժամի: Շնորհիվ խորհրդային իշխանության և կոմունիստական կուսակցության հոգատարության, յերկրի ինդուստրացման հետ միասին ստեղծված են մի շարք խոշոր ելեկտրոկայաններ, ինչպիսին են՝ Զորագեսը, Երգեսները, Լենգեսը, Բանաքեռգեսը, Սեվան-Զանգու կասկադի գիգանտի կառուցումը և այդ շինարարության շնորհիվ 1937 թ. ելեկտրոէներգիայի ստացումն աճել և հասել է 236 միլիոն կիլովատ, իսկ 1938 թ. պետք է ստացվի 354 միլիոն կիլովատ էներգիա:



## 3) ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

ՀԽՍ Հանրապետության 18-րդ տարեդարձին առանձնապես մեծ նվաճումներով է դիմավորում մեր գյուղատնտեսությունը:

Այժմ կոլեկտիվացված է գյուղատնտեսության 91,8 %-ը, ցանքային տարածությունների 95,5 %-ը պատկանում է կոլխոզներին. 1938 թ. հունվարին մեզ մոտ հաշվվում եր 1079 կոլտնտեսություն, վորի մեջ ընդգրկված է 172510 տնտեսություն: Գյուղատնտեսության կոլեկտիվացման հետ միասին կազմակերպվեց նաև մեքենատրակտորային կայաններ 29 շրջաններում, իսկ մեր սոցիալիստական դաշտերում առ 1-ն հուլիսի 1938 թ. աշխատում եյին 1389 տրակտոր, 185 կոմբայն, 554 կալսիչ, 382 ավտոմեքենա և ուրիշ շատ բարդ մեքենաներ: Մեքենատրակտորային կայանները սպասարկում են Հանրապետության կոլտնտեսությունների 70 %-ը:

Հայաստանում դաշնակցականների որոք

1919 թվին ցանված է յեղել 82700 հեկտար տարածություն: Այդ թվում հացահատիկ 78.400 հեկտար, 1938 թ. ՀԽՍ Հանրապետությունում ցանված է 437.433 հեկտար ցանքային տարածություն, այդ թվում հացահատիկ 361.322 հեկտար:

Կոլտնտեսական կարգի հաղթանակը, գյուղատնտեսական արտելի Ստալինյան կանոնադրության կիրառումը հնարավորություն տվեց կոլտնտեսություններին տարեց-տարի ավելացնել կոլխոզային դաշտերի բերքատվությունը և դառնալ միլլիոնատերեր: Մարտունու շրջանի Ձորագյուղի կոլտնտեսությունը հեկտարից ստացել է 14 ցենտներ հացահատիկ, նույն շրջանի Աստաշ գյուղի կոլխոզը մեկ հեկտարից ստացել է 18,2 ցենտներ բերք: Աստաշ գյուղի կոլտնտեսության անդամները աշխորին ստացել են 14,5 կիլոգրամ ցորեն: Կալինինոյի շրջանի ընկ. Մոլոտովի անվան կոլտնտեսությունը հեկտարից ստացել է 18 ցենտներ ցորեն, Ստեփանավանի շրջանի



«Պայքար» կոլխոզը (Նիկոլայևկա) հեկտարից ստացել է 13,5 ցենտներ հացահատիկ: Բարձր բերք են ստացել Սպիտակի, Ապարանի, Ղուկասյանի, Բասարգեչարի, Կոտայքի և բազմաթիվ այլ շրջանների կոլտնտեսություններ: Առանձին բրիգադներ ինչպիսիք են Մարտունու շրջանի Ձորագյուղի կոլխոզի բրիգադիր Ասատուր Կիրակոսյանը հեկտարից ստացել է 37 ցենտներ ուկրաինկա: Բրիգադիր Գրիգոր Պետրոսյանը և Արամ Հակոբյանը յուրաքանչյուր հեկտարից ստացել են 65 ցենտներ գարի:

1938 թ. համարվում է բամբակի կուլտուրայի ամրապնդման և բերքատվության բարձրացման տարի: Բերքատվությունը առ 19-ը նոյեմբերի 1938 թվի միջին հաշվով կազմում է 14,5 ցենտներ: 1913 թվի համեմատությամբ բամբակի ցանքերի տարածությունը լայնացել է և բերքատվության բարձրացման հետևանքով 1938 թ. բամբակի արտադրանքը աճել է յերկու անգամ: Մեկ հեկտարի միջին բերքը

1919 թվին կազմում է 5,6 ցենտներ, իսկ 1938 թվին մեկ հեկտարի միջին բերքն ապահովում է 15,5 ցենտներ բամբակ: Իր ցուցանիշներով բոլոր շրջաններից առաջավորն է Ղամարլվի շրջանը, վորը պլանով նախատեսված 12 ցենտների դիմաց, հեկտարից հավաքել է 18 ցենտներ բամբակ. նույն հաջողությամբ աշխատում են նաև մնացած բամբակացան շրջանները:

Ժողովրդի թշնամիներն իրենց վնասարար քաղաքականությամբ ցանկանում եյին ապացուցել, վոր Խորհրդային Հայաստանում բամբակի կուլտուրայի զարգացման համար հող չկա, իսկ այժմ կոլխոզներն ստացել են չտեսնված բերքատվություն: Կոլխոզները դարձել են ունևոր ու յերջանիկ: Օրինակ՝ յեթե 1937 թվին կոլխոզները պլանից ավելի բամբակ հանձնելու համար ստացել են 652,3 հազար ռուբլի, ապա ընթացիկ տարում ստանալու յեն 15 միլլիոն ռուբլի:

Աճում է միլլիոնատեր կոլտնտեսություն-



ների թիվը: Միլլիոնատեր կոլտնտեսությունների թվին են պատկանում Դարղալուն, վորի յեկամուտն է 2 միլլիոն 941 հազար ռուբլի, Ցուլան 2 միլլիոն 800 հազար ռուբլի: Դրանց թվին են պատկանում «Մըխչյան»-ը, «Զահմետ»-ը, «Անաստված»-ը, «Բամբակաշատ»-ը, Ղամարլվի, Զանգիբասարի, Վաղարշապատի, Հոկտեմբերյանի և այլ շրջանների բազմաթիվ կոլտնտեսությունները:

Զգալի չափով աճել է աշխօրերի արժեքը: Օրինակ՝ «Զահմետ» կոլխոզը (Զանգիբասար) աշխօրին վճարել է 25 ռուբլի փողով, Դարղալուի կոլխոզը՝ 26 ռուբլի, Արտաշատը՝ 24 ռուբլի: Նույնը կարելի յե ասել Գյոլդյումբեթի, Ազատաշենի և Հայաստանի շատ կոլխոզների մասին:

Կոլխոզների յեկամուտների աճումը կոլխոզնիկներին դարձրել է ունևոր ու յերջանիկ: Օրինակ՝ Զահմետի կոլխոզնիկ Մասի Օրուջ-օղլին ստացել է 11.750 ռ., Ալամդար Զորաբ-օղլին ստացել է 15 հազար ռ., Բու-

ըաստանի կոլխոզնիկ Հովակիմ Հովակիմյանը ստացել է 17 հազար ռուբլի, Ցովայի կոլխոզնիկ Սարգիս Մարգարյանը ստացել է 16 հազար ռուբլի, Արտաշատի կոլխոզնիկ Խաչատուր Բաղդալյանը ստացել է 18.000 ռուբլի:

Կարելի յե թվել բազմաթիվ կոլխոզնիկների, վորոնք իրենց ժրաջան աշխատանքի շնորհիվ դարձել են ունևոր ու յերջանիկ:

Հայաստանում մեծ չափով աճել են ծխախոտի պլանտացիաները, 1919 թվին ցանված է յեղել 100 հեկտար ծխախոտ դուլյասար տեսակի, վորի բերքատվությունը մեկ հեկտարից, հավասար է 4,1 ցենտներ, իսկ 1938 թվին մեզ մոտ ծխախոտի ցանքերի տարածությունը հասնում է 2900 հեկտարի, յուրաքանչյուր հեկտարից ստացված է 8,9 ցենտներ բարձրորակ ծխախոտ: Վերջին տարիների ընթացքում ծխախոտաշինարարության (չորանոցների կառուցման) համար ներդրված է 6 միլիոն ռուբլի:



Զափազանց հետամնաց վիճակում եր նաև խաղողագործությունը: Դրան պետք է ավելացնել բերքատվության ցածր մակարդակն և այգեգործության աստիճանաբար քայքայումը: Խաղողի տարածությունները 1914 թվին կազմում եր 9200 հեկտար, իսկ 1919 թվին այն իջավ 4200 հեկտարի: Խորհրդային իշխանության հաստատումից հետո Հայաստանում ժողովրդական տնտեսության ընդհանուր վերելքի հետ զուգընթաց զարգացավ նաև խաղողագործությունը, առ 1-ը հունվարի 1938 թ. խաղողի տարածությունները Հայաստանում կազմում եր 12.900 հեկտար, վորն աճի տեսակետից 1919 թվին համեմատած հավասար է 307 %-ի:

## 4) ԱՊՐԱՆՔԱՇՐՋԱՆԱՌՈՒԹՅՈՒՆ

Խորհրդային Հայաստանի ժողովրդական տնտեսության բարգավաճման հետ միասին մեծ չափերով աճել է ապրանքաշրջանառությունը: Յերկրորդ հնգամյակի վերջում Հայաստանի ապրանքաշրջանառությունը

1932 թ. հետ համեմատած աճել է 3 անգամ: Մանրածախ ապրանքների շրջանառությունը աճել է.

(Հազար ռուբլիներով)

| | 1932 | 1933 | 1937 | 1938 պլան | 1938 թ. աճը 1932 թ. հետ |
|---|---|---|---|---|---|
| Շրջանառութ. աճել է | 199608 | 247969 | 675879 | 758000 | 371,0 |

17 տարվա ընթացքում կատարվել է զգալի կապիտալ ներդրումներ առևտրի բնագավառում, որի գումարը հասնում է 33.402.400 ռուբլու:

## 5) ԿՈՒԼՏՈՒՐԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆ

Խորհրդային Հայաստանի արդյունաբերության և գյուղատնտեսության բնագավառում ձեռք բերած հաջողությունների հետ միասին աճել և զարգացել է սոցիա-



լիստական կուլտուրան: Մինչև խորհրդային իշխանությունը, ժողովրդի յերդվյալ թշնամիների՝ դաշնակների տիրապետության որոք Հայաստանում չկար վոչ մի բարձրագույն ուսումնական հաստատություն: Դրա մասին խոսք լինել չեր կարող: Միայն խորհրդային իշխանությունը հաստատվելուց հետո բոլշևիկների կուսակցության և խորհրդային իշխանության ջանքերի շնորհիվ ստեղծվեցին և լայնացվեցին ԲՈՒՀ-երի ցանցը և նրանց նյութական բազան:

ԲՈՒՀ-երի թիվը 1927/28 թ.թ. հավասար եր 3-ի, 1640 ուսանողներով, իսկ 1938 թ.՝ 8-ի՝ 5981 ուսանողներով:

Հայաստանի խորհրդայնացումից հետո ԲՈՒՀ-երում պատրաստված են 5298 յերիտասարդ մասնագետներ՝ ինժեներներ, գյուղատնտեսներ, բժիշկներ և այլն, իսկ տեխնիկումները 1932 թ. մինչև այժմ բաց են թողել 6500 մասնագետներ:

Տարեց տարի ընդարձակվում է տեխնիկումների ցանցը:

1927/28 թ. թ. կային 12 տեխնիկում, 1676 ուսանողներով, 1937/38 թ. 57-ը 9445 ուսանողներով, 1938/39 թ. 61 տեխնիկում, 10472 ուսանողներով:

Առ մեկը սեպտեմբերի 1938 թվի տարրական, միջնակարգ և ոչ լրիվ միջնակարգ դպրոցներում սովորում են ավելի քան 302 հազար աշակերտ:

Խորհրդային Հայաստանում կա 46 գիտահետազոտական հիմնարկ, առանձնապես խոշոր նշանակություն ունեցող հիմնարկ է Գիտությունների Ակադեմիայի Հայկական Ֆիլիալն իր գիտահետազոտական ցանցով, վորը սպասարկում է ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառները:

## 6) ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ԱՐՎԵՍՏ

18 տարվա ընթացքում ծաղկել և բարգավաճել է Խորհրդային Հայաստանի արվեստն ու գրականությունը: Մինչև խոր-



հրդայնացումը Հայաստանում գոյություն ուներ միայն մեկ թատրոն, վորը չուներ մշտական դերակատարների կազմ: Այժմ Հայաստանում կան 22 մշտական թատրոն, 232 կինո թատրոն, 395 կոլխոզային և այլ ակումբներ: Ավարտվել է Սունդուկյանի անվան կարմրադրոշ Պետական թատրոնի շենքը. արագացված է օպերայի և բալետի պետական թատրոնի մոնումենտալ շենքի կառուցումը: Հայաստանն այժմ ունի իր կինո-արդյունաբերությունը, իր ստեղծագործող ուժերով: Մեծ Ստալինի ամենօրյա հոգատարությամբ ծաղկում է Հայաստանում ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան: Ժողովրդական յերգերի և պարերի ոլիմպիադան փայլուն կերպով ցույց տվեց, թե վորքա՞ն է աճել մեր ժողովրդական կուլտուրան ու նրա ստեղծագործությունը: Այդ ոլիմպիադայում փոքրից մինչև մեծն իրենց յերգերում յերգում եյին մեր ժողովրդի ուրախ և բերկրալի կյանքը և այդ

ուրախ կյանք տվող ընկ. Ստալինը: Հայաստանում հրատարակվում է 56 անուն թերթ: Այս թվերն ապացույց են մեր յերկրի կուլտուրայի և լուսավորության բարգավաճմանը: Անցյալում աշխարհից մեկուսացված Հայաստանի խուլ անկյուններն այժմ պատած են ռադիոյի և հեռախոսային լայն ցանցերով: Հայաստանում ռադիոն սկսել է գործել 1927 թվից: Յեթե 1927 թ. կար ընդամենը 65 յեթերային կետ, 1938 թ. հասել է 3800 կետի: 1928 թ. տրանսլյացիոն 80 կետից 1938 թ. հասել է 26529-ի:

## 7) ՆԱԽԱԴՊՐՈՑԱԿԱՆ ԿՐԹՈՒԹՅՈՒՆ.

Ցարիզմի և դաշնակցականների տիրապետության օրոք նախադպրոցական կրթության մասին խոսք լինել չէր կարող, իսկ Հայաստանի խորհրդայնացման 18 տարիների ընթացքում չտեսնված չափերով աճել է նախադպրոցական ցանցը: Այդ մասին պերճախոս կերպով ասում են հետևյալ թվերը.—



| | 1927/28 թ. | 37/38 թ. |
|---|---|---|
| 1. Մանկապարտեզների թիվը | 51 | 424 |
| Ընդգրկված յերեխաների թիվը | 2840 | 19461 |
| Ամառային մանկապարտեզներ | 52 | 641 |
| Այնտեղ ընդգրկված յերեխաների թիվը | 2180 | 29912 |

## 8) ԱՌՈՂՋԱՊԱՀՈՒԹՅՈՒՆ

Բարելավվել է Հայաստանի աշխատավորության առողջապահության սպասարկման գործը: 18 տարվա ընթացքում ստեղծված է բուժ. և պրոֆիլակտիկ հիմնարկների լայն ցանց: 1913 թ. կար 17 մշտական հիվանդանոցներ 176 մահճակալով, ֆաշիստ-դաշնակների ավերիչ քաղաքականության և գործունեյության հետևանքով հիվանդանոցների թիվն իջավ մինչև 7-ի: Խորհրդային իշխանությունը Հայաստանում հաստատվելուց հետո, 18 տարվա ընթաց-

քում կազմակերպվել է 224 բուժ. հիմնարկ, պոլիկլինիկաներ և բուժկայաններ:

Առ 1-ն հունվարի 1938 թ. մենք ունենք 64 հիվանդանոց 2727 մահճակալով, չհաշված հակամալարիայի կայանները: Միմիայն խորհրդային իշխանության հաստատվելուց հետո Հայաստանում կազմակերպվել է 657 մսուր, 16910 մահճակալով:

1932 թ. մեկ ծննդատուն 35 մահճակալով, հասել է 1938 թ. 20 ծննդատուն— 532 մահճակալներով:

Խորհրդային իշխանության օրոք կազմակերպվել է աշխատավորության համար հանգստյան տներ և սանատորիաներ: Միայն Դիլիջանի սանատորիայում 1938 թ. 10 ամսվա ընթացքում բուժվել են 2152 հիվանդներ, իսկ մինչև 1921 թ. բուժվել են 100 հոգի: Առողջապահության բնագավառում ձեռք ենք բերել խոշոր նվաճումներ: Օրինակ՝ 1913 թ. ընդամենը յեղել է 32 բժիշկ, իսկ 1938 թ. 716 բժիշկ: 1937 թվից մինչև 38 թվի հունվարի մեկը



ներդրվել է ժող. առողջապահության բնագավառում 50·000·000 ռուբլի:

# ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ 18-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

## ՕՐԻՆԱԿԵԼԻ ՊԼԱՆ ԶԵԿՈՒՑՈՂՆԵՐԻ ՅԵՎ ԶՐՈՒՑԱՐԱՐՆԵՐԻ ՀԱՄԱՐ

1. 1917 թ. հոկտեմբերի 25-ին Ռուսաստանի բանվոր դասակարգը և չքավոր գյուղացիությունը բոլշևիկյան կուսակցության ղեկավարությամբ, Լենինի–Ստալինի անմիջական ղեկավարությամբ տապալեցին բուրժուազիայի իշխանությունը և աշխարհում առաջին անգամ հաստատեցին պրոլետարիատի դիկտատուրան: Ընդմիշտ վերջ տրվեց շահագործողների, կապիտալիստների ու կալվածատերերի քաղաքական տիրապետությանը:

Նախկին ցարական Ռուսաստանի բոլոր



ճնշված ժողովուրդները ռուս մեծ ժողովրդի օգնությամբ, սքանչելի բոլշևիկյան կուսակցության ղեկավարությամբ ձեռք բերեցին իրենց ազատագրումն ու ազգային վերածնունդը:

2. Նախախորհրդային «տանջված և բազմաչարչար, անտանտի ու դաշնակների ողորմածությամբ, սովի, քայքայման ու գաղթի մատնված Հայաստանը—բոլոր «բարեկամների» կողմից խաբված այդ Հայաստանը» (ՍՏԱԼԻՆ) կանգնած էր կործանման շեմքին:

Հոկտեմբերյան մեծ հեղափոխության հաղթանակներով վոգեշնչված Հայաստանի աշխատավորները բոլշևիկյան կուսակցության և նրա առաջնորդներ՝ Լենինի–Ստալինի ղեկավարությամբ վոտքի յելան և 1920 թ. նոյեմբերի 29-ին տապալեցին հայ ազգայնական խոշոր բուրժուազիայի ու նրա արյունարբու շների— դաշնակների տիրապետությունը:

«Յերկար տարիների ընթացքում ա–

սում է,— ընկ. Մոլոտովը,— համարյա մի ամբողջ դար ընդհուպ մինչև խորհրդային իշխանության հաղթանակը, տաղանդավոր հայ ժողովուրդը գտնըվում եր ռուսական ցարիզմի կրունկի տակ: Մանր հիշողությունները ցարական ինքնակալության ճնշման մասին, այն ճնշման, վորին յենթարկվում եր հայ ժողովուրդը—ռուսական կալվածատերերի, կապիտալիստների, գեներալների, տերտերների ու չինովնիկների կողմից, դեռ յերկար ժամանակ կապրեն Հայաստանի ժողովուրդների մեջ»:

Հայաստանի աշխատավորության պայքարն ու հաղթանակները 19-րդ դարի ըսկզբից ամբողջապես կապված է հայ ժողովրդի ամենամոտիկ բարեկամ, Լենինի զինակից, ժողովուրդների առաջնորդ Մեծ Ստալինի անվան հետ:

1920 թ. նոյեմբերյան որերին Հայաստանի ժողովուրդը փայլուն հաղթանակով դուրս յեկավ դաշնակցության տիրապետու-



թյան դեմ մղված մարտերում, շնորհիվ մեծ Ստալինի անմիջական ղեկավարության ու ոգնության, վորի անունը Հայաստանի աշխատավորները սիրով կրում են իրենց սրտերում:

3. Հայ ազգայնական խոշոր բուրժուազիայի մարտնչող կուսակցության՝ դաշնակների տիրապետության որոք ավերման եր յենթարկվել ժողովրդական տնտեսությունը. նույնիսկ դադարել եր աշխատելուց գոյություն ունեցող հատ ու կենտ փոքրիկ գործարաններն ու ֆաբրիկաները: Ազգամիջյան թշնամանքի ու թալանի հետևանքով ծայր աստիճանի քայքայվել եր աշխատավոր գյուղացիության տնտեսությունը: Հայաստանի բոլոր անկյուններում ամենուրեք թագավորում եր համաճարակն ու սովը: Միակ յելքն այդ ծանր դրությունից և կործանումից փրկելու համար հանդիսացավ խորհրդային իշխանության հաստատումը Հայաստանում: Հայաստանի բանվորներն ու գյուղացիները դաշնակների

տիրակալության դեմ մղվող արյունալի պայքարում հաստատեցին իրենց հարազատ Խորհրդային իշխանությունը: Հայաստանում Խորհրդային իշխանության հաստատումից հետո 1920 թ. ընկ. ՍՏԱԼԻՆԸ գրում էր.

«Հայաստանն այժմ ձեռք բերեց իր փրկությունն այն բանում, որ իրեն հայտարարեց խորհրդային յերկիր»: Խորհրդային իշխանության հաստատումով մեր յերկրի բանվորներն ու գյուղացիները ստացան անսահմանափակ հնարավորություններ իրենց համար ստեղծելու ազատ, ապահովված, կուլտուրական, ունևոր, յերջանիկ կյանք: «Միայն Խորհրդային իշխանության գաղափարը խաղաղություն և ազգային վերածնություն բերեց Հայաստանին» (ՍՏԱԼԻՆ):

Տասնութ տարի յե ինչ բանվորները, գյուղացիները Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Հեղափոխության դրոշի տակ Լե-



նին-Ստալինի կուսակցության ղեկավարությամբ, ընկ. Ստալինի անձնական ամենորյա օգնությամբ՝ Հայաստանի ամբողջ աշխատավորությունը կերտում է իր յերջանիկ ու հրճվալի կյանքը:

4. 22 որ սրանից առաջ մեր մեծ հայրենիքի աշխատավորությունը հրճվանքով տոնեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Հեղափոխության պայքարի ու հաղթանակների 21-րդ տարեդարձը: ԽՍՀՄ-ն ապրում է զարգացման նոր շրջան. սոցիալիստական շինարարության ավարտման և աստիճանաբար կոմունիզմին անցնելու շրջան: Մեր աշխատավորները մեծ խանդավառությամբ ու հպարտությամբ դիմավորում են Հոկտեմբերյան Սոցիալիստական Հեղափոխության ծնունդ Խորհրդային Հայաստանի 18-րդ տարին: Այդ ժամանակաշրջանում Հայկական Սոցիալիստական Խորհրդային Հանրապետությունը ԽՍՀՄ-ի միասնական ընտանիքում աճել է ու ամրապնդվել:

Շնորհիվ լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության, Անդրֆեդերացիայի ներսում, անդրկովկասի ժողովուրդների եղբայրական օգնությամբ Խորհրդային Հայաստանը վոչ միայն վերականգնեց դաշնակների կողմից քայքայված ժողովրդական տնտեսությունը, այլ նա հետամնաց ագրարային երկրից վերածվեց առաջավոր տեխնիկա ունեցող ինդուստրիալ երկրի:

Հայաստանում բնակվող բոլոր ազգությունները առանց խտրության ապրում են եղբայրական բարեկամությամբ խորհրդային ժողովրդի մեծ ընտանիքում:

Հայաստանի խորհրդայնացման 5-րդ տարեդարձին, 1925 թվին, հայ ժողովրդի մտերիմ բարեկամ ընկ. Սերգո Օրջոնիկիձեն գրում էր՝

> «Հայաստանի աշխատավորները, վորոնք զարմանալի յեռանդով վերականգնեցին իրենց քայքայված տնտեսությունը, հիացմունք եյին պատճառում իրենց բարեկամներին»:



Ստալինյան հնգամյակների իրագործման հետևանքով միանգամայն վերափոխվեց մեր երկրի դեմքը: Ստեղծված են գիգանտ ձեռնարկություններ, ինչպիսիք են ՍԿ. «Սվոպրեն»-ը, Կիրովականի քիմկոմբինատը, Կարբիտի, Մեխանիկական կաշվի և այլ գործարաններ: Լենինականում Մաի և Տեքստիլ կոմբինատները. Յերևանի Կաշվի, Կարի, Ծխախոտի ֆաբրիկաները: Ստեղծված են հզոր էլեկտրոկայաններ՝ Ձորագեսը, Քանաքեռգեսը, Յերգեսը և կառուցվում է Սևան-Զանգու գիգանտը: Կառուցված է Յերևանի տրամվայը: Այսպիսով ԽՍՀՄ-ի բազմազգ ինտերնացիոնալ ժողովուրդների միասնական ընտանիքում իրավահավասար Հայկական ԽՍ Հանրապետությունը դարձել է հզոր և անպարտելի: Այդ տարիների ընթացքում Խորհրդային Հայաստանի աշխատավորները ձեռք են բերել հսկայական հաջողություններ և մեծ հպարտությամբ են դիմավորում 18-րդ տարեդարձին: 1937 թվին Հայաստանի ղեկավար օրգաններում բուն

դրած ժողովրդի թշնամիների մերկացումից հետո ձեռք են բերված խոշոր հաջողություններ. 1938 թ. տաս ամսվա արդյունաբերության պլանը կատարված է 106 տոկոսով: Շատ առաջ է գնացել գյուղատնտեսությունը: Այս տարի ժամկետից առաջ կատարվել և գերակատարվել է բամբակի, խաղողի, և այլ կուլտուրաների պետական մթերման պլանները: Հարստացել են կոլխոզները լավ աշխատանքի և առատ բերքի շնորհիվ: Միայն 5 դաշտավայրական շրջաններում 1–3 միլիոն յեկամուտ ունեցող կոլխոզների թիվը 12-ից հասել է 37-ի (Արտաշատ, Դարղալու, Ջայմառ, Ցուլա և այլն):

«Հոկտեմբերյան հեղափոխությունը վոչ միայն փշրեց կապիտալիզմի շղթաները և ազատություն տվեց ժողովրդին, այլ նաև կարողացավ ժողովրդին տալ նյութական պայմաններ՝ ունևոր կյանքի համար» (ՍՏԱԼԻՆ):

5. Ուժեղ և անպարտելի յե դարձել Խորհրդային Հայաստանը: Այդ ուժը նրա-



նումն է կայանում, վոր նա հանդիսանում է 11 միութենական Խորհրդային Սոցիալիստական հանրապետություններից մեկը, վոր նա ապրում է Խորհրդային Միության բոլոր ժողովուրդների հետ Ստալինյան բարեկամությամբ: Հայաստանի աշխատավորներն իրենց ամբողջ յերջանկությամբ, ինչպես ներկայումս այնպես էլ ապագայում հազարավոր թելերով կապված են խորհրդային միության բոլոր ժողովուրդների կյանքի ու յերջանկության հետ, ժողովուրդների, վորոնց առաջնորդն ու ղեկավարն է հանդիսանում ԼԵՆԻՆԻ-ՍՏԱԼԻՆԻ մեծ ու անպարտելի կուսակցությունը: Էլ ավելի ուժեղացնենք խորհրդային ժողովուրդների Ստալինյան բարեկամությունը:

6. Վորպես պայքարի և աշխատանքի արդյունք խորհրդային ժողովուրդը ստացավ Մեծ Ստալինի կողմից կերտած աշխարհում ամենադեմոկրատական Սահմանադրությունը, վորի ծնունդն է հանդիսանում Հայ-

կական ԽՍՀ-ի սահմանադրությունը: Այս տարի մեր յերկրի ժողովուրդներն իսկական սոցիալիստական դեմոկրատիայի հիման վրա ընտրեցին իրենց իշխանության բարձրագույն օրգանները: Մարդկության պատմության մեջ առաջին անգամ Խորհրդային Միության ամբողջ ժողովուրդը իրականացրեց ընդհանուր, հավասար, ուղղակի գաղտնի քվեարկությամբ ընտրական իրավունքը:

ԽՍՀՄ-ի և Հայկական ԽՍՀ Գերագույն Խորհուրդների ընտրությունները ցույց տըվին, որ Հայաստանի աշխատավորները չունեն այլ դրոշ, բացի բոլշևիկյան կուսակցության դրոշից: Ընտրությունները ցույց տվին, թե վորքան ամուր է և անխորտակելի յեն բոլշևիկյան կուսակցության կապերը ժողովըրդի հետ: Այդ կապը կոփվել, ամրապընդվել է միլիոնավոր աշխատավորներին ճնշումից ու շահագործումից ազատագրության համար մղվող պայքարի յերկար տարիների ընթացքում: Հայկական Խորհըրդային Սոցիալիստական Հանրապետության



Գերագույն Խորհրդի 1938 թ. հունիսի 12-ի ընտրությունները ցույց տվին Հայաստանի աշխատավորների բարոյական-քաղաքական հզոր միասնությունը՝ կոմունիստների և անկուսակցականների ստալինյան բլոկի հաղթանակի հիման վրա: Հայաստանի աշխատավորները յերջանիկ են նրանով, վոր իրենց Գերագույն օրգանում ունեն ժողովուրդների հայր, բոլոր աշխատավորների ուսուցիչ և առաջնորդ Մեծ ՍՏԱԼԻՆԻՆ և նրա մերձավոր զինակիցներ՝ ընկ. ընկ. Մոլոտովին և Միկոյանին:

7. Խորհրդային Հայաստանի 18 տարվա նվաճումները ձեռք են բերված կոմունիստական կուսակցության, ժողովուրդների բարեկամ, հարազատ ՍՏԱԼԻՆԻ անմիջական ղեկավարությամբ ու օգնությամբ: Այդ հաջողությունները ձեռք է բերվել ժողովրդի թշնամիների դեմ— հայրենիքի դավաճանների, ֆաշիզմի՝ տրոցկիստական-բուխարինական-դաշնակցական, բուրժուա — նացիոնալիստական գործակալների դեմ մղած պայքարում: Անցած տար-

վա ընթացքում Հայաստանի աշխատավորները Մեծ ՍՏԱԼԻՆԻ անմիջական օգնությամբ ջախջախեցին ժողովրդի վոխերիմ թշնամիներին, լրտեսներին, դիվերսանտներին, մարդասպաններին: Հայաստանի աշխատավորները համակված խորհրդային հայրենասիրությամբ ոգնեցին խորհրդային հետախուզությանը, ջախջախելու և վոչնչացնելու նրանց բները: Իր ծաղկուն կյանքի համար հայ ժողովուրդը պարտական է ռուս մեծ ժողովրդին, ռուսական բանվոր դասակարգին, բոլշևիկների կուսակցությանը, Լենինին և ժողովուրդների բարեկամ Մեծ Ստալինին:

Մինչև վերջը լիկվիդացիայի յենթարկել վնասարարության հետքերը ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում: Ամբողջ ուժով ոգնենք ստալինյան ժողկոմ ընկ. Յեժովի գլխավորած Ներքգործժողկոմատին անխնա մերկացնելու և վոչնչացնելու ֆաշիզմի գործակալներին՝ տրոցկիստական-բուխարինական, դաշնակցական-նացիոնալիստական խժերին:



Պետք է հիշել և յերբեք չմոռանալ կապիտալիստական շրջապատման մասին, անհրաժեշտ է Հայաստանի աշխատավորներն էլ ավելի ուժեղացնեն իրենց հեղափոխական զգաստությունը՝

«Հարկավոր է մեր ամբողջ ժողովուրդը պահել մոբիլիզացիոն պատրաստության վիճակում՝ ռազմական հարձակման վտանգի հանդեպ, վորպեսզի վոչ մի «պատահականություն» և մեր արտաքին թշնամիների վոչ մի տեսակ ֆոկուսներ չկարողանան մեզ հանկարծակիի բերել» (ՍՏԱԼԻՆ):

Հատկապես այժմ անհրաժեշտ է պայքարըն ուժեղացնել օտարերկրյա հետախուզությունների և նրանց տրոցկիստական-բուխարինական, դաշնակցական գործակալների քայքայիչ գործողությունների դեմ:

8. Կապիտալիստական յերկրներում աշխատավորական մասսաների դրությունը ընդհականակը օրեցոր վատանում է, աճում է գործազրկությունը, աղքատությունը, սովը: Համաշխարհային տնտեսական

ճգնաժամն ել ավելի յե վատթարացրել աշխատավոր մասսաների դրությունը: Կապիտալիստական յերկրներում այդ դրությունըն ել ավելի յե ուժեղացրել պայքարը պրոլետարիատի և բուրժուազիայի միջև: Բուրժուազիան այդ հակասությունների լուծման համար յելք ե փնտրում պատերազմի մեջ, Ֆաշիզմի մեջ, բուրժուազիան փորձում ե ճգնաժամից ստացված կորուստները ծածկել ի հաշիվ աշխատավորական մասսաների և թույլ յերկրների:

1935 թվին Ֆաշիստական Իտալիան հափըշտակեց Հաբեշստանը և ստրկացրեց նըրան: 1936 թվին Գերմանո-իտալական ֆաշիզմը ռազմական ինտերվենցիա սկսեց Իսպանիայի դեմ և «Կարմիրներ»-ի դեմ պայքարելու անվան տակ նրանք իրենց զորքերը մտցրին իսպանական տերիտորիան: 1938 թվին գերմանական ֆաշիզմը բռնի կերպով գրավեց Ավստրիան: 1937 թվին Ճապոնիան գրավեց Պեկինն ու Շանհայը, և հետագայում Նանկինը և ներխուժեց կենտրոնական Չինաստան ու ծավալեց չինական տերիտո-



րիայի հափշտակման իր իմպերիալիստական պլանը: Դրանով իսկ հարված հասցնելով Անգլիայի, Ֆրանսիայի ու Ամերիկայի Միացյալ Նահանգների շահերին, վորոնք մեծ շահեր ունեն Չինաստանում: Այս բոլորը վկայում են, վոր՝

«Յերկրորդ իմպերիալիստական պատերազմն իրոք արդեն սկսվել ե» (ՀամԿ(բ)Կ պատմությունից):

Յերկրորդ իմպերիալիստական պատերազմը ԽՍՀՄ-ի համար ներկայումս հանդիսանում ե ամենալուրջ վտանգը: Այդ ե վկայում գերմանո-իտալական և ճապոնական «հակակոմինտերնական» բլոկը, այդ են վկայում ճապոնական ռազմամոլների անընդհատ պրովոկացիոն յելույթները մեր Հեռավոր Արևելյան սահմաններում: Ճապոնական ռազմամոլների խոշոր պրովոկացիաներից մեկը Խասան լճի շրջանում տեղի ունեցած իրադարձությունն ե: Ճապոնական սամուրայիններն իրենց բեռլինյան բարեկամների խորհուրդով ուզեցին շոշափեն Կարմիր բանակի սվինների ուժն ու հզորու-

թյունը։ Կարմիր բանակը ընկեր Վորոշիլովի ղեկավարությամբ նրանց ցույց տվեց, վոր խորհրդային հողն անձեռնմխելի յե և վոր վոչ վոքի չի թույլատրվում իր խոզի դունչը խոթել խորհրդային բանջարանոցը։ Ել ավելի ուժեղացնենք Կարմիր բանակը, Կարմիր նավատորմը, Խորհրդային Միությունը։

Իմպերիալիստական պետությունները զինվում են մինչև ատամները։ Տեղի յեն ունենում տենդագին նախապատրաստություն ամբողջ աշխարհի վերաբաժանման համար, աշխատավոր ժողովրդի ստրկացման համար։ Գնալով ավելի ու ավելի յե սրվում հակասությունները կապիտալիստական յերկրների միջև, ավելի ու ավելի ուժեղ կերպով և չոչափվում Անգլիայի, Ֆրանսիայի, Ամերիկայի սեփական շահերն, ավելի ու ավելի յե սեղմվում Ֆրանսիայի շրջապատումը։ Բուրժուական դեմոկրատական յերկրները կկարողանային ժամանակին կանխել Ֆաշիստական ագրեսիան, բայց նրանք արդեն չեն հանդիսանում դրան, վորովհե-



տև իմպերիալիստական պետությունների թիկունքը հուսալի չէ։ Բանվոր դասակարգն ամենուրեք համախմբվում է կապիտալի ու Ֆաշիզմի հարձակմանը դիմադրելու համար։ Ժողովրդական ճակատը հզոր զենք է հանդիսանում Ֆաշիզմի հարձակման դեմ։ Ֆրանսիայի և Իսպանիայի օրինակները ցույց տվեցին, թե ինչպիսի ուժ է ստանում բանվոր դասակարգը, յերբ նա միավորված է ժողովրդական ճակատի մեջ։ Ցերիտասարդ իսպանական հանրապետությունը միավորված ժողովրդական ճակատի մեջ բոլոր կողմերից բլոկադայի յենթարկված, հերոսաբար պայքարում է վոչ թե միայն իր ազատության համար, այլ ամբողջ պրոգրեսիվ մարդկության ազատության համար։ Չինաստանի հերոս ժողովրդի պայքարը ճապոնական իմպերիալիզմի դեմ ակնառու օրինակ է ծառայում գաղութային յերկրների բոլոր աշխատավոր ու ճնշված ժողովուրդների համար։ Ֆաշիստական թիկունքներում մասսայական գործադուլները վկայում են

մասսաների հեղափոխական վճռականության մասին:

9. Միայն Խորհրդային Միությունն է հետևողականորեն պայքարում խաղաղության համար: Միայն Խորհրդային Միությունն է հավատարիմ յեղել ու հավատարիմ է մընում իր պարտավորություններին և պայմանագրերին: Միայն Խորհրդային Միությունն է ամբողջ աշխարհում բարձրացնում իր ձայնն ի պաշտպանություն փոքր ժողովրդների, վորոնց սպառնում են ֆաշիստական հափշտակիչները: Միայն Խորհրդային Միությունն է իր ուժով, հզորությամբ և խաղաղության համար հետևողական պայքարով ամենագլխավոր խոչընդոտը հանդիսանում իմպերիալիստական պատերազմի մղձավանջի հետագա տարածման ճանապարհին: Բոլոր ճնշվածների հայացքները և ամբողջ առաջադեմ մարդկության հույսն ուղղված է Խորհրդային Միությանը և նրանք իրենց սիրով են շրջապատում ԽՍՀՄ-ին:

Աճում է շարժումն ընդդեմ ֆաշիզմի,



տեղի յեն ունենում խաղաղության կոնգրեսներ. «Խաղաղության և ազատության» կոնգրես: Ժողովուրդները վոտքի յեն յելնում ընդդեմ իմպերիալիստական նոր սպանդի, մեր յերկիրը գնում է առաջ, նրա ղեկավարությունը գտնվում է ժողովրդի միջից յելած հավատարիմ մարդկանց ձեռքին: Մեզ մոտ տեղի ունի մարդկանց հուժկու աճում, մեր յերկրի ժողովրդական ինտելիգենցիայի աճում: Վերջին տարվա ընթացքում ղեկավարության ասպարեզ են յեկել հազարավոր մարդիկ, վորոնք առաջ են քաշվել արտադրությունից, ղեկավարում են տնտեսական, կուսակցական, պետական ապարատը:

Կարճ ժամանակամիջոցում կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ այդ մարդիկ տիրապետեցին ղեկավարման արվեստին և առաջ են մղում սոցիալիստական շինարարության գործը: Նվաճումներից մեկը հանդիսանում է հատկապես կանանց առաջ քաշումն խորհրդային, պետական և տնտեսական որգաններում: Տասնյակ հա-

զարավոր մարդիկ գիտություն են ստացել, տիրապետել են տեխնիկային, դարձել են արդյունաբերության ու գյուղատնտեսության ստախանովականներ: Մեր ժողովրդական ինտելիգենցիան ամենալայն ասպարեզ ունի իր ստեղծագործական ուժերն ու ընդունակությունները գործադրելու համար:

Մեր ժողովուրդն յուրաքանչյուր որ մեր յերկրին տալիս է ստեղծագործող մարդիկ: Աճել են թատրոնները, ծաղկել է արվեստը: Աճում է ժողովրդի ստեղծագործությունը: Ամբողջ ժողովուրդն իր յերգերի մեջ յերգում է Ստալինի մասին, բոլշևիկների կուսակցության մասին, խորհրդային իշխանության մասին, արտահայտելով հայ ժողովրդի կամքը, իղձերն ու անսպառ սերը դեպի հայրենիքը, դեպի Մեծ Ստալինը:

Աճում է ժողովրդական ինտելիգենցիան: Խորհրդային ինտելիգենցիային շրջապատենք սիրով: Պետք է արմատախիլ անենք



արհամարհական, խուլիգանական վերաբերմունքը դեպի խորհրդային ինտելիգենցիան, վերաբերմունք, վորը վորոշ տեղերում դեռ գոյություն ունի: Այդպիսի արհամարհական վերաբերմունք խորթ և թշնամական է ժողովրդի շահերի համար: Կարևորագույն խնդիր է մեր կադրերի, ինտելիգենցիայի զինումը մարքսիզմ-լենինիզմով: Առանց մարքս-լենինյան թեորիայի, ինտելիգենցիան չի կարող ղեկավարել տնտեսական, կուլտուրական, պետական, շինարարության այն բնագավառները, վորոնք վստահված են նրան:

Լենինի—Ստալինի մեծ կուսակցության ուժն ու անպարտելիությունը հասարակական զարգացման օրենքներն իմանալու, մարքսիզմ-լենինիզմն իմանալու մեջ է: Բանվորական շարժման հեղափոխական թեորիան, սոցիալիստական շինարարության գործն իմանալու մեջ:

Հայաստանի խորհրդայնացման 18-րդ տարեդարձին, Հայաստանի աշխատավորները Խորհրդային Միության բոլոր ժողո-

վուրդների հետ միասին ստացան գաղափարական հզոր մի զենք «Համամիութենական կոմունիստական (բ) կուսակցության պատմության համառոտ դասընթացը» խոր, գիտական մի աշխատություն, վորը կազմվել է ընկ. Ստալինի անձնական մասնակցությամբ և հավանություն է ստացել Համամիութենական Կ(բ) Կ Կենտկոմի կողմից: Գլխավոր հետևությունը, վոր Հայաստանի աշխատավորները կանեն այդ հանճարեղ աշխատության ուսումնասիրությունից, դա այն է, վոր առանց այդպիսի կուսակցության, ինչպիսին է՝ Լենինի—Ստալինի կուսակցությունը, բանվոր դասակարգը չէր կարողանա հաղթանակել: «...Պրոլետարիատի դիկտատուրայի հաղթանակն անհնարին է առանց պրոլետարիատի հեղափոխական կուսակցության, վորն ազատ է ոպորտունիզմից, անհաշտ է համաձայնողականների ու կապիտուլյանտների նկատմամբ, հեղափոխական է բուրժուազիայի և նրա պետական իշխանության վերաբերմամբ»:





ՀՍԽՀ ԺԿԽ. Հրատարակչություն—
«Խորհրդային Հայաստան»

ԲԱՑՎԱԾ Է 1939 Թ.
բաժանորդագրությունը

## „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ"

Լույս է տեսնում ամիսը 2 անգամ

Հ Կ (բ) Կ Կենտկոմի կուսպրոպագանդայի և ագիտացիայի բաժնի հրատարակություն

ԲԱԺԱՆԵԳԻՆԸ՝

12 ամիսը . . 6 ռուբ.

6 » . 3 »

3 » . 1 ռ. 50 կ.

Առանձին համարը՝ 25 կոպ.

Բաժանորդագրվելու համար դիմել՝ «Սոյուզպեչատ»-ի քաղաքային, շրջանային բյուրոներին և փոստի բաժանմունքներին: